# ԹԱՏԵՐԱՍԷՐՆԵ՛Ր, ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ

Մօտ օրէն Ամերիկայէն քաղաքս կը հասնի ծանօթ դերասան Ս. ՍՈՒՐԱԲԵԱՆի ղեկավարութեամբ հայ տրամա - օփէրաթային խումբը: Պիտի տրուի միայն երկու ներկայացում:

Մանրամասնութիւնները մօտ օրէն:




IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10

Le Gérant: H. STÉPHAN

Պոլսէն Հ. ՏԻՐՈՍԿԻ

# Ի ՆՊԱՍՏ ՄԻՋԱԳԵՏՔԻ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐՈՒՆ

ՊՈՒԷՆՈՍ ԱՅՐԷՍ, 8 Սեպտ. Սեփ. Թղթ.) — Երկար ձգձգումներէ յետոյ, վերջապէս տեղւոյս Վասպուրականի Հայրենակցական միութիւնն ալ օրինակ ունենալով Հիւսիսային Ամերիկայի այնքան գեղեցիկ նախաձեռնութիւնը՝ անմիջական օգնութեան հասնելու Միջագետքի հայ գաղթականութեան տեղաւորման Մուսուլի շրջանին մէջ, հրապարակ եկաւ, այսպէս ըսած իր պարտքը կատարելու: Եւ որովհետեւ միակ լաւ միջոցը ներկայացումն է, Հայրենակցական Միութիւնն ալ ընտրեց այդ միջոցը, փոքրիկ գումար մը ձեռք բերելու համար ի նպաստ մեր այն հայրենակիցներուն, որոնք 1915ին այնքան հերոսաբար կռուեցան հայ ազգի դարա-…

…ստիպուած եղան ետ դառնալ: Իսկ խաղը ընդհանրապէս անցաւ յաջող:

Ժողովուրդը հեռացաւ շատ գոհ՝ երկրորդ անգամ տեսնելու ցանկութեամբ:

Սմբատ Թորգոմեան

# ԹՈՒՐՔԻԱ

(Քաղուած Թուրք Թերթերէն)

## "ՎՐԷԺ,,

Երեսփոխան Նէճմէտտին Սատըգ պէյ այս խորագրով կը գրէ Ագշամի մէջ.

— «Այն միջոցին երբ հելլէն վարչապետը Եւրոպայի մէջ դառնալով կ'ըսէ թէ Թուրքերը պատերազմի կը պատրաստուին, եւ ոտք ձեռք համբուրելով օգնութիւն կը մուրայ, Ա-…

## ՕՐՈՒԱՆ ԴԷՊՔԵՐ

…

Ինքնաշարժի վարիչ մը, Հայ, Պետրոս Մուրեան ? որ կը բնակի 25, ուր տէ զ'Աքասիա:

## ՍՏԱՑԱՆՔ

ՓՈՐՁԸ (Հալածուածները): Ա. գիրք: Գրեց Զ. Որբունի: 1929: Տպ. Մարսէյլ: Գին 15 ֆր.:

ՀԱՅ ՍԿԱՈՒՏ, Թիւ 1: Հրատ. Հ. Մ. Ը. Մ.ի փարիզի Շրջ. վարչութեան: Տարեկան բաժնեգին 35 ֆր., ձեռքէ հատը 3 ֆր: Հասցէ.— Hai Scout. 15 Passage du Caire Paris:

ՀԱՅ ԱՐԻ, օրկան Ֆրանսայի Հայ Սկաուտներու: Ա. տարի Թիւ 1: Տարեկան բաժնեգին 25 ֆր.: Հատը' 2,50 ֆր.: Հասցէ.— Գ. Մեծատուրեան, 3 Rue Gustave Tricard, Bagneux (Seine).

…գութիւն բոլոր բարեկեցիկ հայրենակիցները սիրայօժար պիտի ուզեն իրենց նիւթական աջակցութիւնը միացնել Պ. Պ. Դաւիթ…

…հանգիստ կեանքի մասին, տարին անէն կարգի վրկանքներ, հաշտուեցան բոլոր վատ պայմաններուն հետ, որպէսզի մօտ…

"ՅԱՌԱՋ,,Ի ԹԵՐԹՕՆԸ — 1 —

# ՌՈՒՍԱԿՈՎԻ ԳՈՐԾԸ
## ԿԱՄ
# ԱՅՍՕՐՈՒԱՆ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹԻՒՆԸ

ԽՄԲ.— Ինչպէս յայտնած էինք մեր ուրբաթ օրուան խմբագրականով, երիտասարդ գրագէտ փանայիթ Սթրաթի, որ հիմակիր էր խորհրդային կարգերուն եւ Ռուսաստան կ'ապրէր մէկ-երկու տարիէ ի վեր. ընդվզած՝ տիրող անարդարութենէն, ծանր մերկացումներ կ'ընէ:

La Nouvelle Revue Française»էն թարգմանաբար կուտանք վկայութիւնները, որոնք այլապէս ուշագրաւ ծալքեր կը բանան:

Կ'ըսեմ՝ «Ռուսակովի գործը կամ այսօրուան խորհրդային Միութիւնը»: թեմը եւ մանաւանդ, աւա՛ղ, իր բարոյականութեամբ:

«Գործ» մը որքան ալ աղե-…

Ռուսիա ապրելու չգացի երեւան հանելու համար թէ «աշ-…

…ձակապէս ոչինչ կրնայ արգիլել պարկեշտ եւ արդար ըլլալէ:

Ի՛նչ հրէշային յայտնութիւն: …

…բոլոր անոնց հանդէպ՝ որոնք «շարք»ին մէջ չեն: Արդ, եկուտես որ, ծերուկ Ռուսակովը նուազ «շարքային» կը համար-…

ՓԱՆԱՅԻԹ ՍԹՐԱԹԻ

## Լիտվինոֆի զեղծումները

Խորհրդային Միութեան արտաքին փոխ-գործավար Լիտվինոֆի եղբայրը՝ Սավելի Լիտվինոֆ՝ նախկին առեւտրական պատուիրակ Պերլինի, քանի մը ամիսէ ի վեր բանտարկուած է Փարիզի մէջ։ Լիտվինոֆ Պերլինի իր պաշտօնը ձգելէ եւ Փարիզ հաստատուելէ յետոյ, 200,000 անգլ. ոսկիի արժէքով կեղծ մուրհակներ ստորագրած էր՝ հին թուականներով եւ այդ ձեւով ձեռք անցուցած դրամները իւրացուցած։

Հարցաքննիչ դատաւորը հաստատեց Լիտվինոֆի զեղծարարութիւնը։ Միայն թէ տակաւին չէ որոշուած թէ՝ ամբաստանեալը քաղաքայի՞ն թէ ոճրադատ ատեանի առջեւ պէտք է դատուի։

## Քայքայումի նոր փաստ մը

ՊԵՐԼԻՆ, 23 հոկտ.— «Նոյէ Պէրլինէր Ցայթունկ» այս առաւօտ կը գրէ թէ Գեպէուի գործակալները Ռուսիոյ մէջ երեւան հանած են նոր եւ ընդարձակ դաւադրութիւն մը, որուն մէջ մաս ունին նաեւ Պերլինի խորհրդային դեսպանատան կարգ մը բարձրաստիճան պաշտօնատարները։ Մեծ թիւով ձերբակալութիւններ կատարուած են արդէն։

Գրաւուած փաստաթուղթերը ցոյց կուտան թէ դաւադիրները յարաբերութեան մէջ էին գերման ընկերակցութեան մը հետ, որուն վարիչն էր Քուրշ։ Ամբաստանուած են նաեւ Պերլինի խորհրդային առեւտրական պատուիրակութեան քանի մը պաշտօնեաները։

Գեպէուի արտասահմանեան գրասենեակները հրաման ստացած են քննութիւն կատարել եւ զրոյց կը շրջի թէ Պերլինի խորհրդային դեսպանատան կարեւոր պաշտօնեաներէն մէկ քանին արդէն պաշտօնանկ եղած են։ Քանի մը պաշտօնեաներ ալ խորհրդաւոր կերպով անհետացած են։

Գերման թերթը դիտել կուտայ թէ Բեսեդովսկիի խնդրին առթիւ Փարիզի խորհրդային դեսպանատան մէջ կատարուած դէպքերը այժմ ալ կը կրկնուին Պերլինի մէջ։

## Պերլինի իտալական դեսպանը պաշտօնանկ

Մուսոլինի պաշտօնանկըրաւ Պերլինի իտալական դեսպանը՝ կոմս Ալտովրանտի-Մարէսքոթթի։ Դեսպանատան խորհրդականներն ու կցորդներն ալ վերջերս պաշտօնանկ եղած էին՝ կ՚ըսուի նոյնիսկ թէ անոնցմէ մէկը աքսորուած է ֆաշիստ կառավարութեան կողմէ։

Այս խիստ պատիժներու պատճառն այն է որ իտալական դեսպանատունէն գողցուած է դիւանագիտական ծածկագիրի բանալին եւ զայն վերագտնելու համար եղած բոլոր ճախքերն ու ջանքերը ի դերեւ ելած են։

Թերթի մը համաձայն, ծածկագրի բանալին գողցողներն են երկու կիներ, որոնք կը գործէին օտար կառավարութեան մը հաշուոյն։

Պերլինի իտալական դեսպան պիտի նշանակուի Թուրքիոյ դեսպան Օրսինի Պառոնէ կամ Մոսկուայի դեսպան կոմս Չէրութթի։

Լրացուցիչ տեղեկութեանց համաձայն, այս խնդիրը քանի մը ամսուան պատմութիւն ունի արդէն, եւ անցեալ մայիսէն կամ յունիսէն սկսեալ Պերլինի դեսպանատան պաշտօնէութիւնը փոփոխութեան կ՚ենթարկուի։ Ամէնէն առաջ պաշտօնանկ եղաւ դեսպանատան խորհրդական Բոքքօ, յետոյ Հռոմ կանչուեցան քանի մը քարտուղարներ եւ հետզհետէ ուրիշ պաշտօնեաներ։

«Թայմզ»ի Պերլինի թղթակիցը հաստատելով հանդերձ ծածկագրի կորուստին պարագան, կ՚ենթադրէ թէ ուրիշ ծանրակշիռ խնդիրներ պատճառ դարձած են այսքան արմատական փոփոխութեանց։

## Իտալիա եւ Եուկոսլաւիա

Ինչպէս գրեցինք, անցած շաբաթ Եուկոսլաւիոյ մէջ բուռն ցոյցեր կատարուեցան Իտալիոյ դէմ՝ Փոլայի մէջ սլովէն ուսանողի մը ֆաշիստ դատարանին կողմէ մահուան դատապարտուելուն եւ գնդակահարուելուն առթիւ։

Իտալական կառավարութիւնը Պելկրատի դեսպանատան միջոցաւ բերանացի բողոք ներկայացնելէ յետոյ, հիմա ալ գրաւոր ծանուցագիր մը յանձնեց սերպ կառավարութեան, որով կը բողոքէ հակիտալական ցոյցերուն դէմ և բացատրութիւն կը պահանջէ Կրակուաքայի մէջ ցոյցի մը ընթացքին երկու իտալացի նաւազներու խոշտանգումին մասին։ Կը բողոքէ նաև եուկոսլաւ մամուլի հակիտալական յօդուածներուն դէմ։ Իր պատասխանին մէջ եուկոսլաւ կառավարութիւնը կ՚ըսէ թէ քննութիւն պիտի կատարէ երկու նաւազներու խնդրին մասին։

Իտալական ծանուցագիրը ռեւէ ազդեցութիւն չըրաւ մամուլին եւ ընդհ. կարծիքին վրայ։ Թերթերը դարձեալ կը շարունակեն իրենց իտալատեաց գրութիւնները, իսկ ժողովուրդն ալ նոր ցոյցեր կը կազմակերպէ։ Մարիպորի, Նիշի եւ Մոսթարի մէջ նոր ցոյցեր տեղի ունեցան։ Իսկ երէկ, հինգշաբթի Զաղրէպի մէջ մեծ ցոյց մը ծրագրած էին ուսանողները։

## Աֆղանիստան՝ Հանրապետութիւն?

Հեռագրի մը համաձայն, Աֆղանիստանի նորընտիր թագաւոր Նատիր լրջօրէն կը մտածէ ազգային Հանրապետութիւն հաստատել Աֆղանիստանի մէջ։ Իր կարծիքով, հանրապետական վարչաձեւն է միայն որ երկրին մէջ խաղաղութիւն պիտի վերահաստատէ եւ ազգային համերաշխութեան զգացում պիտի ստեղծէ բոլոր ցեղախումբերուն միջեւ։

Ինչ որ ալ ըլլայ սակայն իր ծրագիրը, առ այժմ Նատիր թագաւոր կ՚աշխատի ինքզինքը իբրեւ թագաւոր ճանչցնել օտար պետութեանց։

Թուրքիոյ արտաքին գործավար Թէվֆիք Րիւշտի պէյ հեռագրով հաղորդեց նոր թագաւորին թէ պաշտօնապէս կը ճանչնայ զինքը եւ իր կառավարութիւնը։

Միւս կողմէ Անգլիոյ արտաքին նախարար Հէնտըրսըն Աֆղանիստանի արտաքին նախարարին ուղղեց սրտագին պատգամագիր մը, յոյս յայտնելով որ երկու պետութեանց միջեւ բարեկամական յարաբերութիւնները պիտի շարունակուին եւ թէ Աֆղանիստան իր անկախութեան մէջ պիտի գտնէ ազգային միութիւնն ու ներքին խաղաղութիւնը։





















## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Խորին շնորհակալութիւններս կը յայտնեմ այն բոլոր մարմիններուն, ազգականներուն, բարեկամներուն եւ ընկերներուն, որոնք նամակով, հեռագրով կամ անձամբ ցաւակցութիւն յայտնեցին եւ ծաղկեպսակներ ղրկեցին ողբացեալ աղջկանս եղերական մահուան առթիւ։

Յակոբ Եսայեան

(Պուլվար Օտտօ, Մարսէյլ)

## ՊԱՏԻ ՕՐԱՑՈՅՑ

Մօտ օրէն լոյս կը տեսնէ Մարսէյլի Հ. Յ. Դ. Պատանեկան միութեան 1930ի պատկերազարդ պատի օրացոյցը, որ կ՚ամփոփէ ազգային եւ քաղաքական դէպքերու յիշատակագրութիւնը եւայլն։


IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10

Le Gérant: H. STÉPHAN

